## Հակաթուրք շարժում Սուրիոյ մէջ

« Ժիւմհուրիյէթ »ի Դամասկոսի թղթակիցը կը գրէ.—

Սուրիոյ նոր սերունդը հակաթուրք զգացումներով կը պատրաստուի ու կը թունաւորուի: Արաբ երիտասարդներու մէկ հաւաքոյթին ներկայ եղայ ու հարցուցի թէ ինչո՞ւ Թուրքը չէք սիրեր: Պատասխանեցին թէ իրենց գլխուն եկած փորձանքներուն պատճառը Թուրքերն են: «Օսմ. կայսրութեան շրջանին մեզ ուժէս պահեցին. մեր մեծամեծները աքսորեցին, կախեցին ու կողոպտեցին եւ այնպիսի ողբալի վիճակի հասցուցին որ դըժուարաւ ընդունեցինք ուրիշ դերութիւն մը. հիմա ալ արաբական միութեան դէմ ըմբոստացողները անոնք են: Եւ այն պահուն երբ մեր անկախութեան կ'արժանանանք, դարձեալ Թուրքերն են որ մեր հայրենիքին մէկ կտորը մեր ձեռքէն առնել կ'ուզեն: Վաղը կարգը Հալէպի եւ Դամասկոսի պիտի գայ »:

Մեծամասնութեամբ համալսարանականներէ կը բաղկանան այս երիտասարդները:

Փարիզ ուսած ուրիշ երիտասարդ մը ինծի ըսաւ. « Դեռ այս առտու փոքր քոյրս կ'ըսէր ինծի.— Եղբայր, Իտալացիները Սուրիա պիտի գան եղեր, ատ՝ դէտ, բայց ի՞նչ կրնանք ընել. հոգ չէ սակայն, ով կ'ուզէ թող գայ. Իտալացիները, Ճափոնցիները, Չինացիները, Հրեաները, նոյնիսկ Գնչուները, միայն Թուրքերը թող չգան »:

Սուրիոյ կառավարութիւնը տեղեակ է այս բոլորին: Աչառսիկ փաստը:

Երբ Թուրք արտաքին եւ տնտեսական գործավարները Պաղտատ երթալու համար Հալէպէն անցան, կուսակալը նոյն իսկ չուզեց անոնց ձեռքը սեղմել եւ վերջապէս Դամասկոսի կառավարութեան պնդումին վրայ էր որ սախտուեցաւ զանոնք ողջունելու երթալ. պատճա՞ռ, որովհետեւ եղբայրը ընդհանուր պատերազմին դատապարտուած է պատերազմական ատեանէն: Թուրքի թշնամի է եղեր:

Ցետոյ ուրիշ պարագայ մը:

Դամասկոսի փողոցներուն մէջ «անկցի Թուրքիա, անկցին Թուրք մեծամեծները» վերտառութիւններ գրուած են: Նոյնպէս Ֆուատ Ա. պողոտային վրայ գտնուող սինէմային պատերն ալ այս ձեւով զարդարուած են»:

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍՊԱՆԻԱԿԱՆ ՃԱԿԱՏԻՆ ՎՐԱՅ եւ մասնաւորապէս Մատրիտի առջեւ կռիւները կը շարունակուին առանց վճռական արդիւնքի: Ապստամբները նորէն ռմբակոծելով Մատրիտը, 600 ռումբ ձգեցին: Բազմաթիւ հրդեհներ ծագեցան եւ 150 հոգի սպաննուեցան կամ վիրաւորուեցան: Նոյն օրը Պարսելոնան ալ ռմբակոծուեցաւ:

ԳԵՏԱՅԻՆ ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆԸ ընդհատուեցաւ Փարիզէն Շալօն, Հավռ, Նանսի եւ այլուր, ծովային արհեստաւորները գործադուլ հռչակած ըլլալով: Բողոքը ուղղուած է Աշխատանքի Դաշնակցութեան դէմ:

ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹԵԱՆ ՏՈՒՐՔ մը հաստատուեցաւ այն Գերմանացիներուն վրայ որոնք զինուորութիւն չեն կատարած: Տուրքը պիտի վճարուի մինչեւ 45 տարեկանը: Առաջին 2 տարիներու ընթացքին տուրքը պիտի ըլլայ եկամուտի տուրքին 50 առ հարիւրը, յետոյ միայն 6 առ հարիւր:

ՓՈՒՌԵՐԸ գոց պիտի ըլլան շաբաթը մէկ օր (մեծ մասով երեքշաբթի), 33 առ հարիւր համեմատութեամբ, օգոստոս 1էն սկսեալ, ի գործադրութիւն 40 ժամուան օրէնքի:

ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԵԱՆ շաբաթական տեղեկագրին համաձայն, յուլիս 17ին նպաստընկալ գործազուրկներու թիւն էր 315593, իսկ անցեալ շաբթու՝ 316276, ուրեմն պակսած են 889 հոգի: Անցեալ տարի նոյն ժամանակամիջոցին թիւն էր 424671: Ուրեմն մէկ տարուան մէջ պակսած են 109281 գործազուրկներ:

ՀԱՑԻՆ ԳԻՆԸ հինգ սանթիմ պիտի աւելնայ յուլիս 29էն սկսեալ, ծախուելով 2.40ի:

ՌՈՒՄԲ ՄԸ ՊԱՅԹԵՑԱՒ Հալէպ, Սուրիոյ արտաքին նախարարին եղբօրը բնակարանին մէջ: Քանի մը տղաք վիրաւորուեցան ծանրապէս: Կը կարծուի թէ այս մահափորձը հետեւանք է անձնական քինախնդրութեանց:

ԵՈՒԿՈՍԼԱՎԻՈՅ երեսփ. ժողովը յուլիս 23ին 129ի դէմ 167 ձայնով վաւերացուց Վատիկանի հետ կնքուած պայմանագիրը, որ տեղի տուած էր արիւնալի խռովութեանց: Հանրային կարծիքը չէ հանդարտած տակաւին:

Սերպիոյ պատրիարքը ծանրապէս հիւանդացած ըլլալով, մեռաւ նոյն օրը:

ԱՂՋԻԿՆԵՐ ԾԱԽԵԼՈՒ աղտոտ գործ մը երեւան հանուեցաւ Թուլոնի մէջ: Կազմակերպիչներէն մէկը, Արաբ մը, ձերբակալուեցաւ երբ կը պատրաստուէր « երկու գեղեցիկ կապոցներ» ղրկել Օրան: Մեղսակիցներն ալ կը փնտռուին Պոռոյի եւ Մարսէյլի մէջ:

ԳԻՆՈՎ ՇԱՐԺԱՎԱՐ մը (շօֆէօր) Վիլժիւիֆի մէջ 61 տարեկան կին մը գետին փռելէ վերջ, վար իջաւ եւ քովը գնաց: Բայց փոխանակ օգնելու, նորէն տեղը նստաւ, կառքը քշեց արկածեալին վրայէն եւ դիակը եռեւէն քաշեց մինչեւ 50 մեթր ...

---



---

## ՆՈՒԻՐԱՏՈՒՔ

ՍԵՎՐԱՆ, Խ. Քէհեայ — 70:
ՎԻԼԷՕՐՊԱՆ, Գարօ — 35:
ՓԱՎԻՅԵՈՆ ՍՈՒ ԲՈՒԱ, Ս. Տ. Մ.— 70:
ԱԼԷՍ, Մ. Կու — 140:
ՔՈՒՐԲԸՎՈՒԱ, Օ. Պ.— 35:
ՄԱՐՍԷՅԼ, Տիկ. Ս. Գ.— 70:
ՇԱԼԷԹ, Ղ. Փ.— 35:
ՍԵՎՐ, Մ. Լա — 35:
ՊՕՄՈՆ, Գործ.— 211,65:
ՆԻՍ, Ա. Գ.— 35:
ՊՈՒԼՈՆԵԸ, Դաւ.— 140:
ՆԻՍ, Գալ.— 35:
ՊՈՒԼՎԱՐ OSSO, Գործ.— 753:
ՄԱՐՍԷՅԼ, Գործ.— 810:
ԼԱՆՍԷ, Յ. Շ.— 70:
ՇԱՎԱՆՈԶ, Ա. Մ.— 70:
ԼԱԹԱԼՈՏԻԷՌ, Խ. Պ.— 70:




Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme — PARIS (13)
Le Gérant : H. STEPHAN




## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տիկին Ոսկի Գըճրեան, ծնեալ Պահարեան, կը փնտռէ իր եղբայրները, Սիմոնպէյ Գէորգ և Կարապետ Պահարեան, որոնք 1920-1922ին կը գտնուէին Պոլսոյ Ազգային վարժարանները: Քէմալական շարժման ժամանակ Ամերիկացիներու միջոցաւ փոխադրուած են Դավալայի (Յունաստան) շրջանները, եւ անկէ ի վեր իրենց հետքը կորսուած է:

Ճշգրիտ լուր տուողին մէկ տարուան «Յառաջ» նուէր պիտի տրուի: Դիմել իրենց քրոջ՝ Voskie Kidjirian, née Baharian, 56 rue de Bas Meudon, Issy les-Moulineaux, France (Seine).

Կը խնդրուի յունահայ թերթերէն արտատպել:

---

## “ՎԷՄ„

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ «Վէմ»ի Ժթ. թիւը:

ՊԱՂԵՍՏԻՆԻ ՀՈԳԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ Մ. Նահանգներուն յանձնելու խնդիր մը ծագած ըլլալով, Անգլիոյ վարչապետը յայտարարեց թէ կառավարութիւնը երբեք միտքէն չանցըներ ուրիշին փոխանցել իրեն յանձնուած պաշտօնը ։

« ՄՈՐՆԻՆԿ ՓՈՍՏ », Լոնտոնի թունդ պահպանողական օրկանը, որ առաջին անգամ հրատարակուած է 1772ին, «Տէյլի Թէլէկրաֆ»ի տիրոջ ծախուեցաւ 170000 անգլ. ոսկիի։ Մինչեւ օգոստոս 27 այսպէս չարունակուելով, այ-նուհետեւ պիտի ձուլուի «Տէյլի Թէլէկրաֆ»ի մէջ ։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

**ԱԼՖՈՐՎԻԼԻ ԶԷՆԿԻԼԷՐԻ ԵՐԿՍԵՌ ՀԱՅՐԵՑԱԿՑ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ**

1 Օգոստոս, կիրակի առաւօտ ժամը 7.30էն մինչեւ երեկոյեան 8ը Գրնուայի Փլոամիտ անտառը։ Անձրեւի պարագային պատսպարան ապահովուած է։

Նուագ, արտասանութիւն, երգ. եւլն.։ Հայկական եւ եւրոպական պարեր։

Բացի խմիչքէն ճաշը միասին բերել։

Ձոխ պիւ.ֆէ մատչելի գիներով։

Օթօքար 6.50 ֆրանք. մինչեւ 6 տարեկան փոքրիկները ձրի։

Հաւաքատեղի՝ 29 bis, rue Etienne Dolet, Ալֆորվիլ։

Մեկնում՝ մէկ անգամէն ժամը 7ին, իրիկուան մեկնում՝ 7ին եւ 8ին։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տիկին Ոսկի Գըճրեան, ծնեալ Պահարեան, կը փնտռէ իր եղբայրները, Սինոպցի Գէորգ և Կարապետ Պահարեան, որոնք 1920-1922ին կը գտնուէին Պոլսոյ Ազգային վարժարաններու։ Քէմալական շարժման ժամանակ Ամերիկացիներու միջոցաւ փոխադրուած են Գավալայի (Յունաստան) շրջանները, եւ անկէ իվեր իրենց հետքը կորսուած է։

Ճշգրիտ լուր տուողին մէկ տարուան «Յառաջ» նուէր պիտի տրուի։ Գրել իրենց քրոջ՝ Voskie Kidjirian, née Baharian, 56 rue de Bas Meudon, Issy les-Moulineaux, France (Seine).

Կը խնդրուի յունահայ թերթերէն արտատպել։

— Իսքէնտէր Բայիչեան Ազաէրայցի (Գոմ.իա). որ մինչեւ վեց ամիս առաջ Լիոնի մէջ կը բնակէր եւ հետեւեալ հասցէն ունէր.— 65 rue Nior։

Կը խնդրուի իր հասցէն գիտցողներէն տեղեկութիւն տալ Դանիէլ Սվազճեանին, German Colony, Jaffa—Palestine։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ց. Հ. Կ. Խաչի Ալֆորվիլի Մասնաճիւղի Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Նշանեան ընտանիքէն 100 ֆրանք իր գաւկին Արայ-Արմանի մկրտութեան առթիւ։

### ԳԱՑԷՔ ՏԵՍԷՔ ԼԻՈՆԻ ՄԷՋ

**Cinéma REXY**

Rue Cours Lafayette, angle Garibaldi

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme — PARIS (13)

Le Gérant : H. STEPHAN



## Հ. Յ. Դ.

Գաւառ

ՊՈՄՈՆԻ «Զաւարեան ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը 30 Յուլիս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

Օրակարգ՝ Սրահի նիւթական եւ բարոյական հաշուետուութիւնը։

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Փարիզի «Եգիպտացի» կոմիտէին կողմէ 30 Յուլիս, Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին Սոսիէթէ Սավանթի GF սրահին մէջ, 28 Rue Danton։

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. **Գ. ԲՈՂՈՅԵԱՆ**

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. **Հ. ՄԻՍԱՔԵԱՆ**

Նիւթ՝ ԳԱՂԹԻՆԵՐՈՒ ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ԱԶԴԱԿՆԵՐԸ։

## ԴԱՇՏԱՊԱՐԱՀԱՆԴԷՍ

**ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻ 40ՐԴ- ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ**

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ

Հ. Յ. Դ. ՍԷՆ ԺԷՐՈՄԻ «ՎՐԷԺ» ԽՈՒՄԲԻՆ

ԵՒ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷԻ

1 Օգոստոս, կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, Շաթօ կոնպէրի ճամբուն վրայ, Camp. La Baronne, Պ. Յարութիւն Գըմպլեանի ագարակին մէջ։

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Յ. ԱԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ

Սէն Լուի «Վահան Խորէնի» թատերախումբը կը ներկայացնէ «ՄԱՇԴԻ ԻԲԱԴ»

Երգ, արտասանութիւն եւայլն։

Ժամը 5էն վերջ եւրոպական պար, ընտիր ճազ Պ. Զէօրէքճեանի ղեկավարութեամբ։ Փափաքողները կրնան առաւօտէն գալ։ Ջրի լոգանք անուշ ջուրի աւազանին մէջ։ Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով։

ՄՈՒՏՔ 3 ՖՐԱՆՔ, ութ տարեկանէն վեր պզտիկներու 1 ֆր.։

Անձրեւի պարագային հանդէսը կը յետաձգուի յաջորդ կիրակիի։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ «ԴՐՕՇԱԿ» ԱԿՈՒՄԲ-ԳՐԱԴԱՐԱՆԻՆ ԿՈՂՄԷ

1 Օգոստոս, կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ Մէօտօնի անտառը, պաղ աղբիւրին մօտ (Tapis Vert)։

Գեղարուեստական բաժին, ընտիր ճազ՝ ղեկավարութեամբ Պ. ՍԱՐԳԻՍ ՀԱՅԿԱԶԵԱՆԻ։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ԿՈՒՍԷՆՎԻԼԻ Հ. Յ. Դ. «ՏԱՒՐՈՍ» ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ

1 Օգոստոս, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, Կուսէնվիլ Սուրսի անտառին մէջ, պաղ Ջուրին մօտ։

Կը նախագահէ Ընկեր Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Կը խօսի Ընկեր Լ. ԶՈՐՄԻՍԵԱՆ

Հայկական եւ եւրոպական պարեր։ Ընտիր ճազ։

Փափաքողները կրնան ճաշը միասին բերել

ԿԱՌԱԽՈՒՄԲ.— 12.6, 13.17, 13.27, 14.40, 15.17։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

ՄԱՐՍԷՅԼԻ ՈՒՐՖԱՅԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

1 Օգոստոս, կիրակի ամբողջ օրը, հայրենակից Պ. ԼԵՒՈՆ ԽՕԹ-ՆԵՂԲԱՅՐԵԱՆի պարտէզը, Սէն-Լու, կրան Բէն։

Կէսօրէ վերջ գեղարուեստական բաժին։ Կը մասնակցին Ս. Լուի Պատանեկան Միութիւնը, Կ. Խաչի սանուհիները, Պ. Թիւթէլեան եւլն.։

Կը նախագահէ Տիկն. Ն. ՔԻՊՐԻԹՃԵԱՆ

Կը խօսի Պ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

«Ագումեան» թատերախումբը կը ներկայացնէ «ԽԵԶՈՅԻ ԹՈՒՋԸ»

ՄՈՒՏՔ 2 ՖՐԱՆՔ, ՓՈՔՐԻԿՆԵՐՈՒ 1 ՖՐԱՆՔ

ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հանրակառք թիւ 17 եւ 18, իջնել Սէն-Լու

ԾԱՆՕԹ.— Հանդէսին օրը, կիրակի առաւօտ, ՍԷՆ ԼՈՒ ԿՐԱՆ ԲԷՆԻ եկեղեցիին մէջ հոգեհանգիստ պիտի կատարուի Ուրֆայի Նահատակներու յիշատակին։

## Դ Ա Շ Տ Ա Պ Ա Ր Ա Հ Ա Ն Դ Է Ս

Փարիզահայ Շոֆէօրներու Ընդհ. Միութեան կողմէ կիրակի 1 Օգոստոս, առաւօտէն մինչեւ կէս գիշեր Ռօպէնսոնի **Maison Fique**ի պարտէզին մէջ։

Գեղարուեստական ճոխ բաժին փարիզահայ արուեստագէտներու կողմէ։ Ապահովուած է մեծ որքեստր, ժազ թանկօ, անակնկալներ.։

Կը նուագէ Թապուխ ԱԲԳԱՐ

Ճոխ եւ դիւրամատչելի պիւֆէ։

Անձրեւի պարագային գոց սրահ։

ՄՈՒՏՔ 3 ՖՐԱՆՔ

Հաղորդակցութիւն.— Porte d'Orléansէն առնել 128 թիւ օթօպիւս եւ իջնել terminus. Porte de St. Cloudէն, Issyէն եւ Clamarէն առնել EU օթօպիւսը եւ իջնել Plessuris Robinson։

Վերադարձը ապահովուած է հայ շոֆէօրներու կողմէ։




ՓԱՐԻԶԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ

ՄԱՅԻՍ – ՆՈՅԵՄԲԵՐ 1937

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ ԵՒ ՄԱՐԶԱԿԱՆ ԲԱԶՄԱԹԻՒ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ։ ԵՐԿԱԹՈՒՂԻՈՎ, ՕԴԱՆԱՒՈՎ, ՇՈԳԵՆԱՒՈՎ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ ՄԱՍՆԱՒՈՐ ՊԱՅՄԱՆՆԵՐ։ ՏԵՂԵԿԱՆԱԼ ԲՈԼՈՐ ՃԱՄԲՈՐԴԱԿԱՆ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ ։

